## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



## СОДЕРЖАНИЕ



Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 71-րդ սենյակ, հեռախոս 2—52—78

**Адрес редакции** — Ереван, ЦК КП Армении, II этаж, ком. 71, телефон 2-52-78.



Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

№ 10
ՄԱՅԻՍ
1964

ՀԿՊ Կենտկոմի գաղափարական աշխատանքի բաժին

Լույս է տեսնում ամիսը երկու անգամ

ՉԻՆԱԿԱՆ ՂԵԿԱՎԱՐՆԵՐԻ ՍԽԱԼՆԵՐԻ ՄԱՍԻՆ, ՆՅՈՒԹԵՐ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## ՊԱՏԵՐԱԶՄԻ, ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԵՎ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՀԱՐՑԵՐԻ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ ԱՎԱՆՏՅՈՒՐԻՍՏԱԿԱՆ ԴԻՐՔՈՐՈՇՈՒՄՆԵՐԻ ՎՏԱՆԳԸ*

«Ահա արդեն քսանհինգ տարի է, ինչ ամբողջ Եվրոպան զինվում է մինչ այժմ չլսված չափերով։ Յուրաքանչյուր մեծ տերություն ձգտում է մյուսից անցնել ռազմական հզորության և պատերազմի նախապատրաստության տեսակետից։ Գերմանիան, Ֆրանսիան, Ռուսաստանը բոլոր ուժերը լարում են, որպեսզի գերազանցեն միմյանց»։ Այսպես է գրել Էնգելսը «Արդյոք Եվրոպան կարո՞ղ է զինաթափվել» հոդվածներում։ «Այսպիսի իրադրության մեջ հիմարություն չէ՞ արդյոք զինաթափման մասին խոսելը», —հարցրել է նա։ Եվ պատասխանել է. «Ես պնդում եմ՝ զինաթափումը, իսկ դրանով իսկ նաև խաղաղության երաշխիքը, հնարավոր է»։

Ահա թե հարցն ինչպես էր դնում Էնգելսը։ Արդեն այն ժամանակ նա տեսնում էր հասարակական այն ամենալայն ուժերը, որոնք ելնում են ընդդեմ պատերազմի։ Իսկ ինչպե՞ս կարելի է այժմ, երբ զինաթափման օգտին հանդես է գալիս ամբողջ առաջադեմ մարդ-

* Սկիզբը տես «Ագիտատորի բլոկնոտ»-ի № 9-ում։

կությունը, երբ խաղաղության ուժերը հզոր հենարան ունեն ի դեմս սոցիալիստական երկրների, զինաթափման մասին խոսել որպես «անիրագործելի պատրանքի» մասին:

«Աշխարհ առանց զենքի, աշխարհ առանց պատերազմների» լոզունգը կոմունիստական պարտիաների ձեռքում հզոր միջոց է կատաղի միլիտարիստական իմպերիալիստական շրջանների դեմ ժողովրդական մասսաներին համախմբելու և նրանց ակտիվ պայքարի մոբիլիզացնելու համար: Այդ լոզունգը հասկանալի է յուրաքանչյուր մարդու՝ անկախ նրա քաղաքական համոզմունքներից: Զինաթափումը նշանակում է սպառազինությունների մրցավազքի դադարեցում, հետևաբար նաև հարկային լծի թեթևացում: Այն համապատասխանում է բնակչության ամենալայն խավերի արմատական շահերին: Այդ լոզունգը ակտիվորեն պաշտպանում և պրոպագանդում են ոչ միայն կոմունիստները, այլև շատ ուրիշ հասարակական ուժեր: Իսկ ինչո՞ւ պետք է մենք՝ կոմունիստներս, հրաժարվենք դրանից: Մի՞թե պարզ չէ, որ այդ լոզունգից հրաժարվելը միայն կարող էր թուլացնել կոմունիստների ազդեցությունը ժողովրդական մասսաներում, որ ձեռնտու կլիներ ռեակցիայի ուժերին:

Մի՞թե չինական գործիչներն այնքան միամիտ են, որ չեն հասկանում, թե ուր է տանում նրանց տարօրինակ տրամաբանությունը, թե իրենք աշխարհի ժողովուրդների առջև ինչպիսի հսկայական պատասխանատվություն են վերցնում բանականությունից զուրկ իրենց դիրքորոշումներով, որոնք հղի են ամենածանր հետևանքներով:

Չինական պարագլուխները ոչ միայն իրենք են հակառակ դիրք գրավում միջազգային քաղաքականության կենսականորեն կարևոր այնպիսի հարցերում, ինչպիսիք են զինաթափումը, ջերմամիջուկային զենքի փորձարկումների դադարեցումը, միջազգային լարվածության թուլացումը, այլև փորձում են ձախողել Սովետական Միության և մյուս սոցիալիստական երկրների ջանքերը, որոնք պայքարում են համաշխարհային պատերազմի սպառնալիքի դեմ: ՉԺՀ-ի կառավարությունը միջազգային ասպարեզում բազմիցս հանդես է եկել որպես սոցիալիստական երկրների խաղաղասիրական արտաքին քաղաքականությանը հակազդող, հակապատերազմական ընդհանուր ճակատը կազմալուծող ուժ: Շատ անգամ է պատահել, որ երբ աշխարհում ստեղծ-







վել է սուր իրադրություն, որի ժամանակ հատկապես անհրաժեշտ է սոցիալիստական երկրների և բոլոր խաղաղասեր ուժերի գործողության միասնությունը, չինական ղեկավարները սկսել են ակտիվանալ: Բայց ո՞ւմ դեմ: Սովետական Միության ու մյուս սոցիալիստական երկրների դեմ, որոնք պայքարում են լարվածության թուլացման համար: Իսկ երբ հաջողվել է դրությունը նորմալացնել և խույս տալ պատերազմական կոնֆլիկտից, Պեկինում չեն կարողացել թաքցնել իրենց բորբոքվածությունն ու ափսոսանքը: Այդպես էր, օրինակ, Կարիբյան ճգնաժամի ժամանակ: Չինական ղեկավարները նույնիսկ աշխատում էին օգտվել այն ժամանակ ստեղծված միջազգային իրադրությունից: Հենց Կարիբյան ծովի շրջանում ճգնաժամի թեժ օրերին ՉԺՀ-ի կառավարությունն ընդլայնեց զինված կոնֆլիկտը չին-հնդկական սահմանում:

Չի կարելի ուշադրություն չդարձնել նաև այն բանի վրա, որ խիստ վատացնելով հարաբերությունները Հնդկաստանի հետ, որը, ինչպես հայտնի է, ռազմական խմբավորումների մասնակից չէ, Չինաստանի ղեկավարությունը միևնույն ժամանակ փաստորեն բլոկ կազմեց խաղաղության և Ասիայի ժողովուրդների անվտանգության սպառնացող ՍԵԱՏՕ և ՍԵՆՏՕ ռազմական դաշինքների անդամ Պակիստանի հետ: Փաստ է, որ չինական ղեկավարները, դեն նետելով իրենց բոլոր «ռևոլյուցիոն ֆրազները», իրականում գրավեցին այնպիսի դիրք, որը դժվար է համաձայնեցնել իմպերիալիստական բլոկների նկատմամբ սոցիալիստական համագործակցության երկրների սկզբունքային դիրքի հետ:

Ինչ խոսք կարող է լինել այն մասին, որ չինական ղեկավարներն իրենց բարեկամների և դաշնակիցների ընտրության նկատմամբ բավականին տարօրինակ մոտեցում ունեն: Հարց է ծագում. ինչպե՞ս կարելի է լուտանքներ թափել սոցիալիստական երկրների, կոմունիստական պարտիաների հասցեին և միևնույն ժամանակ ամբողջ աշխարհի առջև շողոքորթել Պակիստանի ռեակցիոն ռեժիմին: Դա ուղղակի անհասկանալի է:

Չինաստանի կոմպարտիայի ղեկավարության բացահայտորեն ավանտյուրիստական դիրքն իրեն զգալ է տալիս նաև միջուկային զենքի հարցի նկատմամբ նրա վերաբերմունքի մեջ: Հայտնի է, որ ՉԺՀ-ի ղեկավարները համառորեն ձգտում են, որ Սովետական Միությունն իրենց ատոմային ռումբ տա: Նրանք չափազանց

վիրավորվեցին, երբ մեր երկիրն իրենց չտվեց ատոմային զենքի նմուշներ։ Բանից դուրս է գալիս, որ չինական ղեկավարների նվիրական նպատակն է տիրել ատոմային զենքին, որն իրենք անվանում են «թղթե վագր»։

Ջայրույթի մոլուցքում Չինաստանի կոմպարտիայի ղեկավարները նույնիսկ հասան այնտեղ, որ հայտարարեցին, թե իբր ատոմային պատերազմի սանձազերծման վտանգը ելնում է, ոչ թե իմպերիալիստներից, այլ «ժամանակակից ռևիզիոնիստներից», պարզորեն ակնարկելով Սովետական Միությունը և մյուս սոցիալիստական երկրները։ ՉԺՌ-ի նախագահ Լյու Շաո-ցին Փխենյանում 1963 թվականի սեպտեմբերի 18-ին արտասանած իր ճառում ասել է. «Իմպերիալիզմն ամենուրեք և կամայականորեն միջուկային զենք չի կիրառել և չի համարձակվի այդպես վարվել»։ Այնուհետև նա առաջ է քաշել վայրագ պնդում, թե իբր Սովետական Միությունը «իմպերիալիստների հետ համաձայնության գալով», «մոնոպոլիա է դարձրել միջուկային զենքը» և «միջուկային շանտաժ է կազմակերպում սոցիալիստական երկրների ժողովուրդների և ամբողջ աշխարհի ռևոլյուցիոն ժողովուրդների նկատմամբ»։ Եթե «ժամանակակից ռևիզիոնիստները»,— պաթետիկորեն բացականչել է նա,— «հասնեն այն բանին, որ առաջինը կիրառեն միջուկային զենքը և դրանով իսկ սանձազերծեն համաշխարհային միջուկային պատերազմ, ապա նրանց ամենախիստ կերպով կդատապարտեն ամբողջ աշխարհի ժողովուրդները»։

Ինչպիսի սրտացավությամբ է Լյու Շաո-ցին հոգ տանում, որ աստված չանի մեկնումեկի մտքով անցնի կասկածելու, թե իմպերիալիստները մտադիր են միջուկային պատերազմ սանձազերծել։ Եվ այս ամենից հետո ի՞նչ արժեն Չինաստանի կոմպարտիայի ղեկավարության կոչերը՝ «դասակարգային մոտեցում ունենալ», «բարեկամներին տարբերել թշնամիներից», պայքարել ԱՄՆ-ի իմպերիալիզմի՝ որպես խաղաղության գլխավոր թշնամու դեմ։ Այստեղ ինչպե՞ս չհիշել բուրժուական դիվանագիտության խարդախ կանոնը, որն արտահայտել է Պալմերստոնը. «Մենք չունենք հավիտենական դաշնակիցներ և հավիտենական թշնամիներ, մեզ համար հավիտենական են միայն մեր շահերը»։ Այս բոլորից երևում է, թե չինական ղեկավարները որ-



քան փոքր նշանակություն են տալիս իմպերիալիզմի ագրեսիվ բնույթի, դասակարգային թշնամիների հանդեպ իրենց անհաշտվողականության վերաբերյալ իրենց իսկ հայտարարություններին։

Չի կարելի չնշել չինական ղեկավարների խոսքերի ու գործերի տարբերության նաև այսպիսի մի օրինակ։ Խոսքը վերաբերում է կապիտալիստական աշխարհի երկրների հետ սոցիալիստական երկրների հարաբերություններին։ Այստեղ չինական ղեկավարներն ունեն երկու չափ. մեկը՝ ՍՍՌՄ-ի և սոցիալիզմի մյուս երկրների քաղաքականության գնահատման, իսկ մյուսը՝ Չինաստանի արտաքին քաղաքականության գնահատման համար։ Բոլորին հայտնի է, թե չինական ղեկավարներն ինչպիսի խիստ բացասական վերաբերմունք են ցույց տալիս կապիտալիստական երկրների, այդ թվում Ամերիկայի Միացյալ Նահանգների հետ տնտեսական ու մյուս հարաբերությունները նորմալացնելու և բարելավելու ուղղությամբ Սովետական Միության և մյուս սոցիալիստական երկրների գործադրած ջանքերին։ Ակամայից հարց է ծագում. ինչո՞ւ է Չինաստանի կառավարությունն այդպես հակազդում միջազգային երկու մեծ տերությունների՝ ՍՍՌՄ-ի և ԱՄՆ-ի հարաբերությունների նորմալացմանը, տերություններ, որոնցից մեծ չափով կախված է միջազգային լարվածության թուլացումը։ Չինական ղեկավարները ավելի ու ավելի համառությամբ ներկայումս աշխատում են խանգարել սովետա-ամերիկյան հարաբերությունների բարելավմանը, դա ներկայացնում են որպես «գործարք իմպերիալիստների հետ»։ Միևնույն ժամանակ ՉԺՌ-ի կառավարությունը տենդագին ջանքեր է գործադրում, որպեսզի հարաբերություններ հաստատի Անգլիայի, Ֆրանսիայի, Ճապոնիայի, Արևմտյան Գերմանիայի, Իտալիայի հետ։ Ամեն ինչից երևում է, որ նրանք դեմ չէին լինի նաև բարելավելու հարաբերությունները ԱՄՆ-ի հետ, բայց առայժմ դրա համար հարմար պայմաններ չեն տեսնում։

Մոլի հարձակումներ գործելով երեք ոլորտներում միջուկային զենքի փորձարկումն արգելելու Մոսկվայի պայմանագրի դեմ և այդպիսով ընկերակցելով իմպերիալիզմի առավել ագրեսիվ շրջաններին, չինական ղեկավարներն իրենց լիովին մերկացրին որպես խաղա-

ղության համար և սոցիալական տարբեր կարգեր ունեցող պետությունների խաղաղ գոյակցության համար պայքարի քաղաքականության հակառակորդներ։

Միանգամայն հասկանալի է, որ պատերազմի և խաղաղության հարցերում Չինաստանի կոմպարտիայի ղեկավարների վտանգավոր, ավանտյուրիստական հայացքներն ու կողմնորոշումները, որոնք նրանք կցանկանային պարտադրել եղբայրական պարտիաներին, վճռական հակահարված ստացան միջազգային կոմունիստական շարժման և համաշխարհային առաջադիմական հասարակայնության լայն շրջանների կողմից։

Ոչ միայն մարքսիստ-լենինյանները, այլև սոցիալիզմի ու խաղաղության բոլոր բարեկամները տագնապով նշեցին, որ Պեկինից լսվող «մարտաշունչ» քարոզները համարյա համընկնում են որպես սոցիալական կոնֆլիկտների լուծման միջոց համաշխարհային պատերազմն ուղղակիորեն արդարացնելու կամ նույնիսկ գովերգելու հետ։

Մի խոսքով, այսօր համաշխարհային կոմունիստական շարժումը նորից ստիպված է պայքարել ռևոլյուցիան պատերազմով «առաջ հրելու» ձախ օպորտունիստական տեսության կրկնության դեմ, տեսություն, որն իր ժամանակին մերկացրել է Լենինը։ Կոստա-Ռիկայի Ժողովրդական ավանգարդ պարտիայի Կենտկոմի պլենումի բանաձևում հաղորդվում է, որ այդ պարտիայի մի շարք պատգամավորների՝ Չինաստան կատարած ուղևորությունների ժամանակ Չինաստանի կոմպարտիայի ղեկավարները զրույցների ընթացքում կարծիք են հայտնել, թե «սառը պատերազմը լավ բան է», իսկ «լարվածության իրադրությունը լավ իրադրություն է» ռևոլյուցիոն պայքարի զարգացման համար։

Արդյոք արժե՞ խոսել այն մասին, որ այդպիսի դիրքորոշումը, որից տրամաբանորեն պետք է բխի խաղաղության համար պայքարի դադարեցում, գուցե և ագրեսիայի իմպերիալիստական քաղաքականության խրախուսում, խորթ է մարքսիզմ-լենինիզմին։ Հենց խաղաղ գոյակցության պայմաններում կարող են բացահայտվել սոցիալիստական սիստեմի բոլոր առավելությունները և ակնառու կերպով կարող է ապացուցվել նրա գերազանցությունը կապիտալիստական կարգերի հանդեպ, հենց այդ պայմաններում են բարենպաստ նա-



խադրյալներ ստեղծվում կապիտալիստական երկրներում դասակարգային պայքարի ծավալման, ազգային-ազատագրական շարժման համար։ Լարված իրադրությունը, ընդհակառակը, հաճախ սնուցիչ միջավայր է հանդիսանում ռեակցիոն և միլիտարիստական ուժերի աճի համար։ Այսպես, չին-հնդկական կոնֆլիկտը մեծ ծառայություն մատուցեց իմպերիալիզմին, լուրջ վնաս հասցրեց ազգային-ազատագրական շարժմանը, Հնդկաստանի առաջադիմական շրջաններին, հակաիմպերիալիստական պայքարի ամբողջ ճակատին։

Մարքսիստ-լենինյանների համար գոյություն չունի և չի կարող գոյություն ունենալ երկընտրանք՝ կամ պայքար խաղաղության համար, կամ ռևոլյուցիոն պայքար։ Եվ առաջինը, և երկրորդը փոխադարձաբար կապված են միմյանց հետ և, վերջին հաշվով, ուղղված են իմպերիալիզմի դեմ։ Պայքարը խաղաղության համար հանդիսանում է իմպերիալիզմի դեմ, նրա կողմից պատրաստվող նոր պատերազմների, գաղութային երկրներում իմպերիալիստների ագրեսիվ գործողությունների, ուրիշ երկրների տերիտորիաներում իմպերիալիստների ռազմական բազաների, սպառազինությունների մրցավազքի դեմ ժողովուրդների պայքարի կարևորագույն ձևերից մեկը։ Նոր համաշխարհային պատերազմի սպառնալիքի կանխման նպատակին ուղղված՝ բանվոր դասակարգի և բոլոր աշխատավորների ջանքերը նպաստում են ժողովուրդներին միջազգային համերաշխության ոգով դաստիարակելու գործին, քանի որ պայքարը խաղաղության համար արդի պայմաններում, ինչպես երբեք, ինտերնացիոնալ է իր էությամբ։

Հասկանալի է, պայքարը խաղաղության համար համադեմոկրատական շարժում է, իր առջև սոցիալիստական վերափոխումների խնդիրներ չի դնում և չի կարող դնել։ Այս բանը, ի դեպ, ամենևին հաշվի չեն առնում Չինաստանի կոմպարտիայի ղեկավարները, որոնք փորձում են խաղաղության կողմնակիցների շարժմանը պարտադրել նրան ոչ հատուկ խնդիրներ։ Պայքարը խաղաղության համար ընթանում է հօգուտ սոցիալիզմի, քանի որ այն մղվում է պատերազմի վտանգի աղբյուրի՝ իմպերիալիզմի դեմ, ժողովրդական լայն մասսաներին մոտեցնում է իրենց արմատական շահերի ա-

*վելի լավ գիտակցմանը։ Իսկ սոցիալիզմի համար մղվող պայքարի և խաղաղության համար մղվող պայքարի ամենասերտ կապի ժխտումը չինական ղեկավարների կողմից՝ ցույց է տալիս նրանց խոր անհավատությունը ժողովրդական մասսաների ուժի նկատմամբ, դասակարգային պայքարում կազմակերպված գործելու աշխատավորների ընդունակության նկատմամբ։*

*Ռևոլյուցիայի հարցում Չինաստանի կոմպարտիայի ղեկավարության այժմյան կոնցեպցիայի էությունն այն է, որ հարկավոր է հրաժարվել սոցիալիստական ռևոլյուցիայի՝ որպես մասսայական ժողովրդական պայքարի արդյունքի մասին լենինյան ուսմունքից, առանց մասսաների տրամադրությունը, ռևոլյուցիային նրանց պատրաստականությունը, ներքին և արտաքին իրադրությունը հաշվի առնելու ամենուրեք և բոլոր դեպքերում կողմնորոշվել բացառապես դեպի զինված ապստամբություն։ Այս կուրսի վնասը կայանում է նրանում, որ քրտնաջան ու համբերատար աշխատանքը մասսաների մեջ, սոցիալիստական ռևոլյուցիայի համար օբյեկտիվ և սուբյեկտիվ պայմանների հասունացման ուղղությամբ կողմնորոշումը նենգափոխվում է ռևոլյուցիոն ֆրազով կամ, որ ավելի վատ է, ժողովրդից կտրված մի խումբ մարդկանց ավանտյուրիստական գործողություններով։*

*Որքան էլ Չինաստանի կոմպարտիայի ղեկավարները աշխատում են ապացուցել հակառակը, կոմունիստական շարժման մեջ ծավալված բանավեճի առավել սուր կետերից մեկը ոչ թե «ռևոլյուցիա կատարել թե չկատարել» երկընտրանքն է, այլ այն պրոբլեմը, թե «ինչ ուղիներով տանել ռևոլյուցիան»։ Եթե կոմունիստական պարտիաները բոլոր հույսերը դնեն միայն և բացառապես զինված պայքարի վրա, հաշվի չնստելով այն բանի հետ, թե արդյոք, ժողովրդական մասսաները մի՞շտ են պատրաստ պաշտպանելու այդպիսի պայքարը,— ապա դա անխուսափելիորեն կհանգեցնի միայն դառը պարտությունների։ Չինական ղեկավարները մոռացել են մարքսիստական-լենինյան ուսմունքի կարևորագույն դրույթներից մեկը՝ ռևոլյուցիան չի կարելի արագացնել կամ կատարել պատվերով, այն չի կարելի խթանել դրսից։ Ռևոլյուցիան պրոլետարիատի և նրա ռևոլյուցիոն ավանգարդի կողմից ղեկավարվող ժողո-*



*վրդական մասսաների գործն է։ Միանգամայն հասկանալի է, որ դա ամենևին էլ չի նշանակում, թե իբր մարքսիստ-լենինյանները պարտավոր են պասիվորեն սպասել, թե երբ բարենպաստ իրադրություն կստեղծվի։*

*ՍՄԿՊ-ի փորձը ցույց է տալիս, որ նույնիսկ համեմատաբար փոքրաթիվ կոփված պարտիան ընդունակ է գլխավորելու ռևոլյուցիան, ժողովրդին տանելու իր ետևից։ Բայց դրա համար, ինչպես անընդհատ ընդգծել է Վ. Ի. Լենինը, հարկավոր է, որ երկրում ստեղծվի ռևոլյուցիոն այնպիսի իրադրություն, երբ «վերնախավերը» այլևս չեն կարող կառավարել, իսկ «ցածր խավերը» այլևս չեն ցանկանում ապրել հին ձևով։*

*Ռեալիստորեն գնահատելով արդի իրադրությունը, եղբայրական պարտիաները գտնում են, որ անցումը կապիտալիզմից սոցիալիզմին հնարավոր է ինչպես խաղաղ, այնպես էլ ոչ խաղաղ եղանակով։*

*Սակայն, ինչ ձևով էլ որ կատարվի անցումը կապիտալիզմից սոցիալիզմին, այն հնարավոր է միայն սոցիալիստական ռևոլյուցիայի, տարբեր ձևերի պրոլետարական դիկտատուրայի միջոցով։ Սոցիալիզմին անցնելու խաղաղ կամ ոչ խաղաղ եղանակի ռեալ հնարավորությունը յուրաքանչյուր առանձին երկրում որոշվում է կոնկրետ պատմական պայմաններով։ Կապիտալիստական երկրների եղբայրական պարտիաները շարունակ ղեկավարվում են Վ. Ի. Լենինի այն ցուցումով, որ բանվոր դասակարգը պետք է տիրապետի ռևոլյուցիոն պայքարի առանց բացառության բոլոր ձևերին, պետք է պատրաստ լինի պայքարի մեկ ձևը շատ արագորեն և անսպասելիորեն փոխելու մյուսներով և դրանք օգտագործելու կոնկրետ իրադրությունից ելնելով։ Իսկ չինական ղեկավարները հանդես են գալիս տակտիկայի հարցերի նկատմամբ եղբայրական պարտիաների այդպիսի ստեղծագործական մոտեցման դեմ, փորձում են Պեկինից ցուցում տալ, թե նրանք ինչպես և երբ պետք է ռևոլյուցիա կատարեն իրենց երկրներում։*

*«Ժենմին ժիբաո» թերթի և «Խունցի» ժուռնալի այս տարվա մարտի 31-ի հոդվածում Չինաստանի կոմպարտիայի ղեկավարներն ուղղակի հանդես են գալիս սոցիալիզմին անցնելու ձևերի վերաբերյալ Դեկլարացիայի և Հայտարարության դրույթների դեմ, սահմանա-*

զատվում են դրանցից և պահանջում են վերանայել միջազգային կոմունիստական շարժման այդ ծրագրային փաստաթղթերը։ Եթե մինչև այժմ չինական ղեկավարները թեկուզ խոսքով ընդունում էին Դեկլարացիան և Հայտարարությունը, ապա այժմ բացահայտորեն հանդես են գալիս դրանց դեմ։

Ինքը կյանքը հաստատեց, որ խաղաղության, դեմոկրատիայի, ազգային անկախության և սոցիալիզմի համար պայքարի՝ Մոսկվայի խորհրդակցությունների մշակած ծրագիրը հենց այն ծրագիրն է, որը սերտորեն կապակցելով մերձավոր ու վերջնական նպատակների համար բանվոր դասակարգի պայքարը, ապահովում է համաշխարհային ռևոլյուցիայի գործի առաջընթացը։

ՍՄԿՊ Կենտկոմի «Կոմունիստ»
ամսագրի 1964 թվականի 5-րդ
համարից։

---

ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ԿԱԶՄԻ ՄԵՋ ԱԴՐԲԵՋԱՆԻ ՄՏՆԵԼՈՒ
150-ԱՄՅԱԿԸ

---

## ԵՂԲԱՅՐԱԿԱՆ
## ՌՈՒՍ ԺՈՂՈՎՐԴԻ ՀԵՏ

Ժողովուրդների պատմության մեջ եղել են այնպիսի իրադարձություններ, որոնց փառքը դարեր է ապրել, գնալով ոչ միայն չի մոռացվել, այլ, ընդհակառակը, ավելի է փառաբանվել։ Այսպիսի նշանավոր իրադարձություններից է Ռուսաստանի կազմի մեջ Ադրբեջանի մտնելու փաստը։ Չնայած ցարիզմի գաղութակալական քաղաքականությանը, այս իրադարձությունը ադրբեջանական ժողովրդի կյանքում մեծ առաջադիմություն էր։ Արդեն մեկուկես դար է, ինչ ադրբեջանական ժողովուրդը իր մեծ եղբայր ռուս ժողովրդի և մեր երկրի մյուս ժողովուրդների հետ ձեռք-ձեռքի տված առաջ է ընթանում պայքարի և հաղթանակների ճանապարհով։



Ադրբեջանական ժողովուրդը աշխատանքային խանդավառության պայմաններում տոնում է պատմական նշանակություն ունեցող մեծ իրադարձություն՝ Ռուսաստանի կազմի մեջ Ադրբեջանի մտնելու 150-ամյակը։ Դա ոչ միայն ադրբեջանական ժողովրդի տոնն է, այլև ադրբեջանական և ռուս ժողովուրդների միասնության տոնը, մեր երկրի ամբողջ ժողովուրդների բարեկամության տոնը։

Ադրբեջանական ժողովուրդը պանծալի ռուսական պրոլետարիատի օգնությամբ, Լենինի ստեղծած և դաստիարակած կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, 1920 թվականի ապրիլին ձեռք բերեց ազատություն։ Մեր երկրի եղբայրական ժողովուրդների հետ համաքայլ առաջ ընթանալով, նրան հաջողվեց աննախընթաց զարգացման աստիճանին հասցնել արդյունաբերությունը, գյուղատնտեսությունը, գիտությունն ու կուլտուրան։ Ներկայումս Սովետական Ադրբեջանը բարձր զարգացման հասած սոցիալիստական ռեսպուբլիկաներից մեկն է։

Ադրբեջանական ժողովուրդը ձեռք բերած նվաճումների համար երախտապարտ է կոմունիստական պարտիայի իմաստուն լենինյան ազգային քաղաքականությանը, իր մեծ եղբայր ռուս ժողովրդին, մեր հայրենիքի մյուս եղբայրական ժողովուրդներին, նրանց եղբայրական միասնությանն ու օգնությանը։

Ռուս և ադրբեջանական ժողովուրդների միջև բարեկամության արմատները շատ հին են։ Ադրբեջանական ժողովրդի մեծ զավակ Նիզամին դեռևս XII դարում գովաբանել է ռուս ժողովրդին, մեծ խանդավառությամբ երգել նրան։ Ադրբեջանի մեծ մտավորական, փիլիսոփա և դեմոկրատ Մ. Ֆ. Ախունդովը շատ բարձր է գնահատել Ռուսաստանի կազմի մեջ Ադրբեջանի մտնելու պատմական նշանակությունը, Պուշկինի սպանության առթիվ բարձրացրել է իր բողոքի ձայնը։ Մ. Ֆ. Ախունդովը գրել է. «...Ռուսական պետության պաշտպանության շնորհիվ մենք ազատվեցինք անցյալում նվաճողական բանակների անվերջանալի հարձակումներից, կողոպուտներից և, վերջապես, հանգստություն ձեռք բերինք»։

Ականավոր լուսավորիչ-սատիրիկ Սեիդ Ազիմ Շիրվանին երիտասարդ սերնդին խորհուրդ է տվել սովորել

ռուս մեծ ժողովրդի լեզուն։ XVIII դարի երկրորդ կեսին Ադրբեջանի ականավոր բանաստեղծ և մեծ պետական գործիչ Վագիֆը կողմնակից էր, որ Ադրբեջանի հողերը միացվեն Ռուսաստանին։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակից հետո Ն. Նարիմանովը հաճախ ասում էր, որ «Առանց Ռուսաստանի Ադրբեջանը չի կարող ապրել... Ադրբեջանական ռեսպուբլիկայի մշտնջենական երջանկությունը դա Ռուսաստանն է»։

«Առաջադիմական Ռուսաստանը ադրբեջանցիների համար լույսի ու հույսի օջախ է եղել։ Ինչպես գարնանային ծաղիկներն են ձգտում արևին, այնպես էլ Ադրբեջանի լավագույն մտքերը ձգտում էին Ռուսաստանին, դեպի Ռուսաստանի առաջավոր կուլտուրան։ Ադրբեջանական կուլտուրայի ականավոր գործիչների մի ամբողջ պլեադա իր կրթությունն ստացել է Ռուսաստանում, սերտ կապ պահպանելով ռուսական գիտության ու կուլտուրայի ականավոր ներկայացուցիչների հետ,—ասել է Ադրբեջանի ԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Վ. Յու. Ախունդովը։

Ռուսաստանի կազմի մեջ Ադրբեջանի մտնելու փաստը նպաստում էր այն բանին, որ ադրբեջանական ժողովուրդը հաղորդակից լինի ռուսական առաջավոր կուլտուրային, Ադրբեջանում ստեղծվեն մի շարք կարևոր գիտական հիմնարկներ և կուլտուրական օջախներ, է՛լ ավելի զարգանան ադրբեջանական գրականությունն ու գեղարվեստը։

Ռուսաստանի կազմի մեջ Ադրբեջանի մտնելու հանգամանքը օբյեկտիվորեն ճանապարհ է բաց անում Ադրբեջանի տնտեսական, քաղաքական և կուլտուրական հետագա զարգացման համար։ Ադրբեջանական ժողովուրդը միանգամայն ազատվում է ասպատակություններից և հարձակումներից։

Անդրկովկասի առաջավոր մարդիկ, գրողներ Մ. Ֆ. Ախունդովը, Խ. Աբովյանը, Ի. Ճավճավաձեն և ուրիշները շատ բարձր են գնահատել Ռուսաստանի կազմի մեջ Ադրբեջանի մտնելը։

Իսկ հայ ժողովրդի մեծ բանաստեղծ Հովհաննես Թումանյանն այսպես է արտահայտել հայ ժողովրդի երախտագիտությունը ռուս ժողովրդի նկատմամբ. «Հարգանքով ծնկաչոք գլուխ եմ խոնարհեցնում մեծ



ռուս ազգի գեղեցիկ գրականության, Պուշկինի, Լերմոնտովի, Գոգոլի, Դոստոևսկու, Տուրգենևի, Չեխովի, Տոլստոյի և նրանց արժանավոր հաջորդների գրականության առաջ, այն գրականության առաջ, որից շատ բան են սովորել մեր գրողներն ու մտավորականները»։

Ռուս ժողովուրդը սովետական ժողովուրդների ընտանիքում մեծ եղբայր է։ Ռուս ժողովուրդն այս իրավունքը ձեռք է բերել այն բանի համար, որ նա հերոսական պայքար է մղել հանուն Ռուսաստանի ժողովուրդների ազատության, նա մեծ դեր է խաղացել սոցիալիստական և կոմունիստական շինարարության գործում։

Սովետական Միության ժողովուրդները շատ իրավացիորեն ռուս ժողովրդին անվանում են իրենց մեծ եղբայրն ու անկեղծ բարեկամը։ Ռուս ժողովուրդը այս մեծ պատվին արժանացել է շնորհիվ այն պայքարի, որ նա մղել է հանուն ազատության ու երջանկության, ընդդեմ ներքին բռնակալների և օտարերկրյա նվաճողների։ Ադրբեջանի ականավոր գրող Աբդուլլա Շաիկը «Մեր մեծ եղբայրը» իր մի հոդվածում այսպես է արտահայտել մեր երկրում ապրող ժողովուրդների սերն ու հարգանքը դեպի ռուս ժողովուրդը. «Մենք սիրով ու հարգանքով ռուս ժողովրդին անվանում ենք մեր մեծ եղբայրը։ Ինչպես որ մի մեծ ընտանիք պարծենում է իր լավագույն և ընդունակ զավակով, մենք էլ նույնպես պարծենում ենք ռուս ժողովրդով»։

Ժողովուրդների միջև, հատկապես անդրկովկասյան ժողովուրդների և ռուս ժողովրդի միջև գոյություն ունեցող բարեկամությունն առաջ է եկել ընդհանուր գործը խթանելու անհրաժեշտությունից։ Նրանց բարեկամությունն անմիջականորեն կապված է եղել այս կամ այն պրոբլեմի լուծման հետ։

Դեռևս հեռու անցյալում Անդրկովկասի ժողովուրդներն իրենց ճակատագիրը կապել են Ռուսաստանի, ռուս ժողովրդի ճակատագրի հետ, նրանք ձգտել են տիրապետել ռուսաց լեզվին և ռուսական կուլտուրային։

Անդրկովկասյան ժողովուրդների Ռուսաստանի կազմում մտնելուց շատ առաջ նույն ժողովուրդների և ռուս ժողովրդի միջև տնտեսական և կուլտուրական կապեր են ստեղծվել, և այդ կապերը է՛լ ավելի են ամրապնդվել XV—XVI դարերում։ Իսկ այդ կապերը համ-

ընկնում էին Ադրբեջանի, Հայաստանի և Վրաստանի ժողովուրդների ցանկություններին ու շահերին:

Ռուս մեծ ժողովրդի եղբայրական օգնության շնորհիվ Անդրկովկասում սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթանակը և սովետական իշխանության ստեղծումը նոր և փայլուն դարաշրջան բաց արեց Անդրկովկասի ժողովուրդների և ռուս ժողովրդի միջև գոյություն ունեցող եղբայրական հարաբերություններում: Ռուս ժողովրդի անկաշառ օգնության շնորհիվ երեք եղբայրական ռեսպուբլիկաներում ժողովրդական տնտեսությունը վերականգնվեց, երկիրն ինդուստրացվեց, գյուղատնտեսությունը կոլեկտիվացման ենթարկվեց:

Ռուս ժողովուրդը բարձր գաղափարներ է տարածել աշխարհում: Ռուս ժողովուրդը շատ մեծ ծառայություններ է մատուցել ժողովուրդներին պայքարի հանելու հանուն ազատության, դեմոկրատիայի և սոցիալիզմի: Աշխարհի առաջադիմական քաղաքական-հասարակական գործիչները միշտ բարձր են գնահատել այն:

Հայտնի է, թե ինչպես մարդկության հանճարեղ առաջնորդներ Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը բարձր են գնահատել ռուսական կուլտուրան, ռուս ժողովրդի առաջադիմական դերը:

Անցյալում ցարական կայսրության ծայրամասերում ապրող փոքր և ճնշված ժողովուրդները այսօր զարգացման բարձր աստիճանի են հասել: Այդ բոլորի համար նրանք պարտական են մեծ Լենինի պարտիային, ռուս մեծ ժողովրդին:

Ադրբեջանական ժողովուրդը ռուս ժողովրդին հավերժ երախտապարտ կլինի ընդհանուր երջանկության համար մղվող պայքարում նրա անգնահատելի օգնության, չթուլացող ուշադրության, անսպառ սրտագինության ու անշահախնդրության համար:

Մեր երկրի ժողովուրդներն իրենց բոլոր հաջողություններով ու նվաճումներով պարտական են անմահ Լենինի ստեղծած ու կոփած կոմունիստների պարտիային:

ՄԱՀԱՐԼԱՄ ԲԱՅՐԱՄՈՎ
ՀԿՊ Կենտկոմի հրահանգիչ



# ԱՐԴՅՈՔ ՀԱՆԴՈՒՐԺԵԼԻ՞ ԵՆ ԿՐՈՆԱԿԱՆ ԾԻՍԱԿԱՏԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ԿՈՄՈՒՆԻՍՏԻ ԸՆՏԱՆԻՔՈՒՄ

(Այս հոդվածը, որի հեղինակն է ՌՍՖՍՌ-ի «Գիտելիք» ընկերության վարչության նախագահի տեղակալ ընկ. Դ. Սիդորովը, արտատպվում է ՍՄԿՊ Կենտկոմի օրգան «Ագիտատոր» ամսագրի 1964 թվականի 6-րդ համարից, որոշ կրճատումներով):

Մեր պարտիան միշտ ակտիվորեն պայքարել ու պայքարում է կրոնի դեմ, որն անհամատեղելի է կոմունիստական բարոյականության հետ:

Կապիտալիստական հասարակարգի պայմաններում կրոնը շահագործողների ձեռքում ուժեղ զենք է աշխատավորության դեմ պայքարելու համար, ամեն տեսակի ճնշման ու շահագործման պաշտպանն է:

«Սոցիալիզմը և կրոնը» հոդվածում Վ. Ի. Լենինը գրել է. «Մենք պահանջում ենք, որ կրոնը մասնավոր գործ լինի պետության նկատմամբ, բայց մենք ոչ մի կերպ չենք կարող կրոնը մասնավոր գործ համարել մեր սեփական պարտիայի նկատմամբ: Պետությունը ոչ մի գործ չպետք է ունենա կրոնի հետ, կրոնական ընկերությունները չպետք է կապված լինեն պետական իշխանությունների հետ: Ամեն ոք պետք է միանգամայն ազատ լինի իր ցանկացած կրոնը դավանելու կամ ոչ մի կրոն չընդունելու, այսինքն՝ աթեիստ լինելու, ինչպես և լինում է սովորաբար ամեն մի սոցիալիստ»:

Սակայն Նախառևոլյուցիոն շրջանում Վ. Ի. Լենինը հարկ չէր համարում պարտիայի ծրագրի մեջ մտցնել նրա անդամների աթեիզմի պահանջը: Այն ժամանակ ուժեղ էր կրոնական գաղափարախոսության ազդեցությունը, շատ բանվորներ հավատում էին աստծուն: Աթեիզմի պահանջը նրանց կշեղեր տնտեսական ու քաղաքական արմատական հարցերի համար մղվող պայքարից:

Նախառևոլյուցիոն շրջանում Վ. Ի. Լենինը հնարավոր ու ճիշտ էր համարում պարտիայի մեջ այն բան-

վորների ընդունումը, որոնք դեռ կապերը չեն խզել կրոնի հետ և հավատում են աստծուն։ «Կրոնի նկատմամբ բանվորական պարտիայի վերաբերմունքի մասին» հոդվածում նա գրել է, որ մենք պարտիայի շարքերն ենք ներգրավում նույնիսկ հավատացյալներին, բայց ներգրավում ենք նրանց մեր ծրագրի ոգով, աթեիզմի ոգով դաստիարակելու համար։ Բայց, թույլ տալով, որ պարտիայի շարքերն ընդունվեն կրոնի հետ կապերը դեռ չխզած աշխատավորները, կոմունիստական պարտիան կրոնական գաղափարախոսության նկատմամբ թույլ չի տվել ոչ մի հաշտվողականություն, կրոնի վնասի ոչ մի թերագնահատում։

Հոկտեմբերյան սոցիալիստական ռևոլյուցիայից հետո կոմունիստական պարտիան արդեն այլ կերպ է դընում այդ հարցերը։ Պարտիայի VIII համագումարում ընդունված ծրագրում նշված է, որ անհրաժեշտ է գաղափարական լուրջ պայքար մղել կրոնի դեմ։ Այլ կերպ է դրվում նաև պարտիայի անդամների աթեիզմի հարցը։ Ծրագիրը պահանջում է, որ յուրաքանչյուր կոմունիստ լինի աթեիստ և անպարտիականների շրջանում հակակրոնական պրոպագանդա մղի։ Պարտիայի VIII համագումարից հետո կոմունիստների բացարձակ մեծամասնությունը գիտակցաբար և ակտիվորեն մեծ աշխատանք էր կատարում մասսաներին կրոնի ազդեցությունից ազատելու համար։ Սակայն շատ պարտիական կազմակերպություններում եղել են այնպիսի փաստեր, երբ պարտիայի որոշ անդամներ, նյութական, տնտեսական և ընտանեկան կապերով կապված լինելով իրենց շրջապատող հետամնաց մասսաների հետ, մասնակցել են կրոնական ծիսակատարությունների՝ եկեղեցում կատարվող կնունքի, ամուսնության, եկեղեցական ծիսակատարություններով թաղման և այլն։

Այդպիսի անհանդուրժելի փաստերի առթիվ Ե. Յարոսլավսկին այն ժամանակ գրեց «Տուրք նախապաշարմունքներին» հոդվածը, որտեղ քննադատում էր պարտիայի ծրագիրը խախտող կոմունիստներին։ Վ. Ի. Լենինը, ընթերցելով հոդվածը, այն «Պրավդայի» խմբագրություն ուղարկեց, հետևյալ մակագրությամբ՝ «Տպագրել անպայման։ Իսկ այդպիսի կոմունիստներին դուրս շպրտել պարտիայից»։

1921 թվականին պարտիայի Կենտկոմը իր որոշման մեջ նշեց, որ պատասխանատու պոստեր գրավող, ակտիվ սովետական կամ պարտիական աշխատանք կա-



տարող պարտիականները կրոնի բնագավառում պարտիայի ծրագիրը խախտելու, այս կամ այն կրոնական պաշտամունքի հետ կապեր ունենալու համար հեռացվում են պարտիայի շարքերից։

Ինչպես հայտնի է, Հայրենական պատերազմի տարիների ծանրությունը, տագնապ մերձավորների ճակատագրի համար, կացության բարդությունը և եկեղեցականների ու աղանդավորների կրոնական պրոպագանդայի ուժեղացումը վերջիններիս օգնեցին կրոնի ազդեցության տակ գցել սովետական մարդկանց որոշակի մասին։

Եկեղեցականները 1943—1944 թվականներին իրենց դիրքերն ամրապնդեցին նաև կրոնի ու եկեղեցու վերաբերյալ լենինյան օրենսդրությունից այն ժամանակ թույլ տրված նահանջների հետևանքով։ Այդ կապակցությամբ որոշ տեղեր կոմունիստների շրջանում ևս հաշտվողական տրամադրություններ առաջացան կրոնի նկատմամբ։

Կոմունիստներից ոմանք ոչ միայն չեն մասնակցում աշխատավորների գիտա-աթեիստական դաստիարակությանը, այլև նույնիսկ հաշտվում են այն բանի հետ, որ իրենց ընտանիքների անդամները կատարում են կրոնական ծեսեր, եկեղեցի են գնում։ Պատահում է նաև, որ իրենց՝ կոմունիստների մասնակցությամբ տերտեր է հրավիրվում գերեզմանի վրա, կոմունիստների բնակարաններում սրբապատկերներ են փակցված և այլն։ Այսպիսի կոմունիստները, հավատացյալ ծնողների, զոքանչի կամ տատի հետ «հաշտ» ապրելու համար ուրանում են իրենց իդեալները, խիղճը։ Կրոնական ծեսեր կատարող որոշ կոմունիստներ ու կոմերիտականներ փորձում են արդարանալ նրանով, թե կատարել են հանգուցյալ ծնողի վերջին խնդրանքը՝ իրեն թաղել կրոնական ծիսակատարությամբ, թե հավատացյալ են մայրը, կինը կամ տատը, որոնց հնարավոր չէ վերադաստիարակել։

Կրոնի քարոզիչները և մոլեռանդները, «օրինակ» բերելով այնպիսի կոմունիստներին ու կոմերիտականներին, լուրեր են տարածում, թե իբր առհասարակ կոմունիստները հավատում են աստծուն։

Ցավոք սրտի, որոշ սկզբնական պարտիական կազմակերպություններ անտարբեր, պասիվ են վերաբերվում այդ բոլոր երևույթներին։ Նրանց ամենևին չի անհանգստացնում այն հանգամանքը, որ կոմունիստ





ընտանիքում կան այնպիսի մարդիկ, որոնք պաշտպանում են կյանքի նկատմամբ հակագիտական հայացքները, կատարում են կրոնական ծեսեր, ստիպում են նույնն անելու մերձավորներին, հատկապես երեխաներին։

Այս կամ այն կրոնական ծեսը կատարող կոմունիստների ու կոմերիտականների արարքները որոշ պարտկազմակերպություններում չեն դառնում քննարկման առարկա։ Այստեղ այնպես են ձևացնում, թե իբր կոմունիստ կամ կոմերիտական լինելը համատեղելի է կրոնական ծիսակատարությունների հետ։

Կրոնը կոմունիզմի գլխավոր գաղափարական հակառակորդն է։ ՍՄԿՊ XXII համագումարը նշեց, որ սոցիալիզմի և կոմունիստական հասարակարգի կառուցման պայմաններում առաջնահերթ նշանակություն է ստանում բոլոր սովետական մարդկանց մեջ գիտական աշխարհայեցողության ձևավորումը։ Աշխատավորների դաստիարակությունը կոմունիզմի ոգով նախատեսում է անհաշտ գաղափարական պայքար կրոնական նախապաշարմունքների և սնոտիապաշտության դեմ։

ՍՄԿՊ XXII համագումարում ընդունված ծրագիրը պարտիայի անդամներին պարտավորեցնում է վճռական պայքար մղել կրոնական նախապաշարմունքների և անցյալի մյուս մնացուկների դեմ։

Պարտիան իր անդամներից պահանջում է վճռականապես վերջ տալ կրոնի նկատմամբ պասիվ վերաբերմունքին։ Յուրաքանչյուր կոմունիստ պետք է լինի համոզված աթեիստ, պետք է իր սրբազան պարտքը համարի կրոնական նախապաշարմունքները մերկացնելը։

Կոմունիստն ամեն նորի, առաջավորի համար ակտիվ մարտիկ է, կենսականորեն շահագրգռված է այն մարդկանց ճակատագրի համար, ովքեր դարձել են կրոնական գաղափարախոսության զոհեր։ Կոմունիստը հումանիստ է, որը պայքարում է մարդկային հոգիների համար։ Կոմունիստների աթեիզմը պետք է լինի խորապես մարտնչող։ Արդի պայմաններում պայքարը կրոնի դեմ պետք է կապված լինի քաղաքական ու գիտական գիտելիքների պրոպագանդման ու տարածման հետ։

Պայքարը կրոնի դեմ, պայքար է ոչ թե հավատացյալների, այլ հակագիտական գաղափարների, կրոնական գաղափարախոսության դեմ։



Կոմունիստները հատուկ ուշադրություն պետք է դարձնեն իրենց ընտանիքի անդամների վերադաստիարակմանը։ Չէ՞ որ այն ընտանիքը, որտեղ կան հավատացյալներ, կրոնականության պահպանման հիմնական օջախ է։ Հայտնի է, որ ընտանիքի հավատացյալ մեծահասակների միջոցով կրոնի ազդեցությունը տարածվում է երեխաների ու դեռահասների վրա։ Պայքարն ընտանիքի աթեիստական դաստիարակության համար մի խնդիր է, որից կոմունիստը չի կարող խուսափել։ Նա պարտավոր է հաստատակամորեն, սիստեմատիկաբար ընտանիքի անդամների հետ աշխատելով, նրանց գիտակցությունն ազատել կրոնից, վերադաստիարակել կոմունիզմի ոգով, հասնել այն բանին, որ ընտանիքում չլինեն կրոնական հայացքների տեր մարդիկ։

Պարտիական, հասարակական կազմակերպությունները պետք է մեծ ուշադրություն դարձնեն այն կոմունիստների և կոմերիտականների վրա, որոնց ընտանիքներում կան հավատացյալներ, պետք է նրանց զինեն անհրաժեշտ նյութերով, հանձնարարեն աթեիստական գործունեության որոշակի մեթոդիկա։

Անհրաժեշտ է հատուկ վճռականությամբ դնել այն կոմունիստների ու կոմերիտականների պատասխանատվության հարցը, որոնք ոչ միայն խուսափում են կրոնական մնացուկների դեմ պայքարելու բնագավառում պարտիայի կանոնադրության պահանջները կատարելուց, այլև երբեմն իրենք են պաշտպանում այդ մնացուկները։

Չի կարելի հանդուրժողականություն ցուցաբերել այն մարդկանց նկատմամբ, որոնք պարտիայի, կոմերիտմիության անդամ հանդիսանալով հանդերձ, կատարում են կրոնական այս կամ այն ծեսը։

---

# ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՉԵԽՈՍԼՈՎԱԿԻԱՅԻ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

(Թվեր և փաստեր)

*Մայիսի 9-ը Չեխոսլովակիայի ազգային տոնն է։ 19 տարի առաջ Սովետական զինված ուժերը չեխ և սլովակ հայրենասերների հետ միասին ազատագրեցին Չեխոսլովակիան հիտլերյան զավթիչներից։ Երկրում հաստատվեց ժողովրդական իշխանություն։ Պատմական կարճ ժամանակամիջոցում ռեսպուբլիկայի աշխատավորները կոմպարտիայի ղեկավարությամբ վերափոխեցին իրենց հայրենիքը և այն դարձրին աշխարհի բարձր զարգացած ինդուստրիալ երկրներից մեկը։ Ահա տեղեկություններ այդ մասին։*

☆ *Արդյունաբերական արտադրանքը սոցիալիստական Չեխոսլովակիայում վերջին հինգ տարում աճեց համարյա 44 տոկոսով։*

☆ *Բնակչության մեկ շնչին ընկնող այնպիսի կարևոր արտադրանքով, ինչպիսիք են՝ չուգունը, պողպատը, ցեմենտը, կոշկեղենը, Չեխոսլովակիայի Սոցիալիստական Ռեսպուբլիկան գրավում է աշխարհում առաջին տեղերից մեկը։ Պողպատի արտադրությամբ նա արդեն անցել է ԱՄՆ-ից։*

☆ *Չեխոսլովակիայում արտադրվում է ամբողջ աշխարհում թողարկվող բոլոր տեսակի դազգահների և մեքենաների կեսը։*

☆ *Հենվելով Սովետական Միության բազմակողմանի համագործակցության վրա, Չեխոսլովակիան յուրացրել է քիմիական ապարատուրայի մի շարք տիպերի, սառցարանային սարքավորումների և նավթային արդյունաբերության ապարատուրայի արտադրությունը։*

★ *Սովետական Միության հետ համագործակցելու շնորհիվ երկրում կազմակերպվել է ալյումինի և սինթետիկ կաուչուկի արտադրություն, թողարկվում է ֆերոհամաձուլվածք, պենիցիլին, մեքենայացված է ածխի հանույթը և այլն։*

☆ *Ռեսպուբլիկայի ազգային եկամտի 1/6 մասը ստացվում է գյուղատնտեսության արտադրանքից։*

★ *Երկրի մթերային պահանջի մեծ մասը բավարարում է սեփական գյուղատնտեսությունը, որը տալիս է արտահանման բազմաքանակ մթերքներ։*

★ *Երկրի մոտ 80 քաղաքներ միմյանց հետ կապված են օդային ուղիներով, որոնք սպասարկվում են փոքր հարմար ինքնաթիռներով, ավտոտաքսիներով։*

☆ *Չեխոսլովակիայի ժողովրդական համալսարաններում և ակադեմիաներում այս ուսումնական տարում սովորում են մոտ 200 հազար աշխատավորներ, որոնք ծանոթանում են գիտության, տեխնիկայի, կուլտուրայի նորագույն նվաճումներին։*

☆ *Չեխոսլովակիան թատրոնների և ժողովրդական գրադարանների թվով աշխարհում գրավում է առաջին տեղերից մեկը։*

☆ *Ամբողջ Չեխոսլովակիայի էքսպորտի 44—45 տոկոսը կազմում է մեքենաշինական արդյունաբերության արտադրանքը։*

☆ *Ներկայումս Չեխոսլովակիայի արտաքին առևտրի ապրանքաշրջանառությունը Սովետական Միության հետ, 1948 թվականի համեմատությամբ, աճել է 7 անգամ։*

☆ *Բնակչության մեկ շնչին ընկնող արդյունաբերական արտադրանքի տեսակետից Չեխոսլովակիան արդեն անցել է զարգացած այնպիսի երկրներից, ինչպիսիք են՝ Իտալիան, Շվեդիան, Ֆրանսիան, Բելգիան։*

☆ *Եթե 1937 թվականին բնակչության մեկ շնչին ընկնող պողպատի ձուլմամբ Չեխոսլովակիան աշխարհում գրավում էր 10-րդ տեղը, ապա 1952 թվականին նա գրավեց 2-րդ տեղը, առաջ անցնելով Անգլիայից, Ֆրանսիայից և Շվեդիայից։*

☆ *1960 թվականին Չեխոսլովակիան՝ բնակչության մեկ շնչին ընկնող չուգունի և ցեմենտի արտադրությամբ անցավ ԱՄՆ-ից, Ֆրանսիայից և Անգլիայից։*

☆ *Բնակչության մեկ շնչին ընկնող մետաղահատ դազգահների, ջիպերի, մոտոցիկլետների, քարածխի, կոշկեղենի, բամբակե գործվածքեղենի, շաքարի և այլ տեսակի արդյունաբերական արտադրանքի քանակով Չեխոսլովակիան գրավում է աշխարհում առաջին տեղերից մեկը։*

☆ *Ժողովրդական իշխանության տարիներին երկրում ստեղծվեցին ալյումինի արտադրության, նավթաշինության, մեքենաշինության և քիմիական արդյունաբերության նոր ճյուղեր։ Կառուցվում է երկրում առաջին սինթետիկ կաուչուկի գործարանը։*

☆ *Երկրի էկոնոմիկայում կարևոր դեր է խաղում արտաքին առևտուրը։*

*Չեխոսլովակիան առևտուր է անում համարյա աշխարհի բոլոր երկրների հետ։ Նրա համար շատ կարևոր նշանակություն ունեն տնտեսական հարաբերությունները Սովետական Միության հետ, որը արտաքին առևտրի շրջանառության մեջ գրավում է առաջին տեղը։ Ամեն տարի ընդարձակվում է Չեխոսլովակիայի տնտեսական կապերը տնտեսապես թույլ զարգացած երկրների հետ։*

# ՔԻՄԻԱԿԱՆ ՏԵՐՄԻՆՆԵՐԻ ԲԱՌԱՐԱՆ

ՊԵՍՏԻՑԻԴՆԵՐ— *Սրանք գյուղատնտեսական վնասատուներից ու հիվանդություններից բույսերի պաշտպանման, ինչպես նաև մոլախոտերի ու ծառա-թփային անցանկալի բուսականության դեմ պայքարի համար կիրառվող նյութեր են։*

*Տարբեր երկրներում պատրաստվում են մի քանի հազար ձևի պեստիցիդներ (փոշի, էմուլսիաներ և այլն)։ Դրանց մեծ մասը թունավոր է ոչ միայն վնասատուների և հիվանդությունների հարուցիչների համար, այլև, սխալ վարվելու դեպքում, կարող է թունավորել մարդկանց, տնային և վայրի կենդանիներին ու ոչնչացնել կուլտուրական ցանքերն ու ծառերը։ Ուստի պեստիցիդների օգտագործման ժամանակ անհրաժեշտ է խիստ ղեկավարվել դրանց կիրառման հրահանգներով և խորհրդակցել բույսերի պաշտպանության հմուտ մասնագետների հետ։*

ԻՆՍԵԿՏԻՑԻԴՆԵՐ— *Քիմիական նյութեր են, որոնք կիրառվում են վնասատու միջատների ոչնչացման համար։ Միջատների օրգանիզմի վրա ներգործելու եղանակի տեսակետից դրանք բաժանվում են մի քանի խմբի.* կոնտակտային *(արտաքինից ներգործող թույներ),* աղիքային *(որոնք միջատների օրգանիզմ են ներթափանցում թունավորված սննդի միջոցով) և* ֆումիգանտներ *(որոնք գազի կամ գոլորշու ձևով ներթափանցում են միջատների շնչառական ուղիները)։ Ինսեկտիցիդներից մի քանիսն ունեն միաժամանակ և՛ կոնտակտային, և՛ աղիքային թունավորման հատկություններ կամ վերոհիշյալ բոլոր հատկությունները։*

*Ինսեկտիցիդները խմբերի են բաժանվում նաև ըստ քիմիական բաղադրության՝ քլորօրգանական (ԴԴՏ, հեքսաքլորան, պոլիքլորպինեն և այլն), ֆոսֆորօրգանական (տիոֆոս, մեթիլմերկապտոֆոս, կարբոֆոս, օկտամեթիլ և այլն), մկնդեղ պարունակող նյութեր (կալցիումի և նատրիումի արսենիտներ, կալցիումի արսենիտ և այլն), ծծմբանյութեր, հանքային յուղեր, բուսական ծագում ունեցող թույներ, որոնք պարունակում են ալկալոիդներ (անաբազին, նիկոտին, պիրետրում, ռոտենոն) և մի շարք այլ խմբեր։*

---



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. Չինական պառակտիչների սխալ հայացքները պատերազմի, խաղաղության և ռևոլյուցիայի հարցերում

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Պատասխան ամերիկյան լրագրի թղթակցի հարցերին, *Երկեր, հատոր 30, էջ 464—467, Հայպետհրատ, 1951։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Եղբայրություն, միասնություն, հավատարմություն մարքսիզմ-լենինիզմին. *Ճառ, արտասանած սովետա-լեհական բարեկամության միտինգում, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. ապրիլի 16-ի համարում։*

Մ. Ա. ՍՈՒՍԼՈՎ— Պատերազմի, խաղաղության և ռևոլյուցիայի հարցերը, *ՍՄԿՊ Կենտկոմի պլենումում տված զեկուցումից, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. ապրիլի 4-ի համարում։*

Վ. Ա. ԱՆԴՐՈՊՈՎ— Լենինիզմը լուսավորում է մեր ուղին, *զեկուցում տրված Մոսկվայի հանդիսավոր նիստում՝ նվիրված Վ. Ի. Լենինի ծննդյան 94-րդ տարեդարձին, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. ապրիլի 23-ի համարում։*

## 2. Եղբայրության և համերաշխության կապեր

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎԻ զրույցները Ահմեդ Բեն Բելլայի հետ, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. մայիսի 6-ի համարում։*

Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ— Ճառ արտասանած սովետա-ալժիրյան բարեկամության միտինգում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. մայիսի 7-ի համարում։*

ԱՀՄԵԴ ԲԵՆ ԲԵԼԼԱ— Ճառ արտասանած սովետա-ալժիրյան բարեկամության միտինգում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. մայիսի 7-ի համարում։*

Սովետա-ալժիրյան համատեղ կոմյունիկե, *տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. մայիսի 8-ի համարում։*

## 3. Ռուսաստանի կազմի մեջ Ադրբեջանի մտնելու 150-ամյակը

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ժողովուրդների ամուր և անխախտ բարեկամությունը մեր ուժն է, կոմունիզմի գալիք հաղթանակների գրավականը, *առանձին բրոշյուր, Հայպետհրատ, 1961։*

Վ. ՅՈՒ. ԱԽՈՒՆԴՈՎ— Ռուսաստանի կազմի մեջ Ադրբեջանի մտնելու 150 տարին, *առանձին բրոշյուր, Ադրբեջր, 1964։*

Մ. Ա. ԻՍԿԱՆԴԵՐՈՎ— Եղբայրական ժողովուրդների համերաշխ ընտանիքում, *հոդված, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. ապրիլի 28-ի համարում։*

Պատմական խոշոր իրադարձություն եղբայրական ադրբեջանական ժողովրդի կյանքում, *ՀԿՊ Կենտկոմի նախագահության որոշումը Ռուսաստանի կազմի մեջ Ադրբեջանի մտնելու 150-ամյակը լայնորեն նշելու մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. մայիսի 8-ի համարում։*

## 4. Աշխատանքի արտադրողականության աճը ժողովրդի նյութական բարեկեցության գլխավոր աղբյուրն է

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Մեծ նախաձեռնություն. *Երկեր, հատոր 29, էջ 501—533, Հայպետհրատ, 1951։*

Պ. Ֆ. ԼՈՄԱԿՈ— Ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի բարձրացումը, *ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1964—1965 թվականների պետական պլանի մասին տված զեկուցումից, տպագրված «Ս. Հ.»-ի 1963 թ. դեկտեմբերի 17-ի համարում։*

Մրցությունը կոմունիզմի կառուցման կարևոր գործոն է, *հոդված աշխատանքի առաջավորների մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. ապրիլի 29-ի համարում։*

## 5. Ընդօրինակենք գյուղատնտեսության առաջավորների փորձը

*ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ— Ինչպես ավելի լավ կառուցել կադրերի ուսուցման սիստեմը, *ՍՄԿՊ նախագահությանը գրած նամակից, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. ապրիլի 25-ի համարում։*

Տիրապետել ագրոքիմիական գիտելիքները, *հոդված մի առաջավոր օղակավարուհու աշխատանքի փորձի մասին, տպագրված «Հայաստանի գյուղատնտեսություն» ամսագրի 3-րդ համարում։*

Ապրել տնտեսության գլխավոր ճոգսերով, *տեղեկություններ Վարդենիկ գյուղի կոլտնտեսության առաջավոր փորձի մասին, տպագրված «Ս. Հ.»-ի 1964 թ. ապրիլի 30-ի համարում։*

---



# ԿԱՐԴԱՑԵՔ ԱՅՍ ԳՐՔԵՐԸ

Գիտական աթեիզմի հիմունքները, *ուսումնական ձեռնարկ, Հայպետհրատ, Երևան, 1963 թ.։*

*Գրքում տրվում է աթեիզմի տեսության ու պատմության այնպիսի հիմնական պրոբլեմների սիստեմատիկ շարադրանքը, ինչպիսիք են աթեիզմի էությունը և նրա զարգացման գլխավոր էտապները, կրոնական աշխարհայացքի և կրոնական բարոյականության քննադատությունը, կոմունիստական պարտիայի և սովետական պետության վերաբերմունքը կրոնի և եկեղեցու նկատմամբ, մեր երկրում կրոնական մնացուկների գոյության պատճառները և դրանց հաղթահարման ուղիները, աթեիստական պրոպագանդայի ձևերն ու մեթոդները։ Գրքի առանձին գլուխներ նվիրված են գիտության ու կրոնի պայքարին, կրոնի ծագմանը, հրեական կրոնի, իսլամի, բուդդայականության, քրիստոնեության և նրա հիմնական ուղղությունների՝ ուղղափառության, կաթոլիկության, բողոքականության. «Գիտական աթեիզմի հիմունքները» կարող է օգտագործվել որպես ձեռնարկ պրոպագանդիստների ու ագիտատորների լայն շրջանների համար։*

Պատասխաններ հավատացյալներին, *հանրամատչելի տեղեկատու, Հայպետհրատ, Երևան, 1963 թ.։*

*Ինչ է խղճի ազատությունը, ինչու է մեզ մոտ արգելված որոշ կրոնական կազմակերպությունների գործունեությունը, ինչով է վնասակար կրոնը, ինչումն է կրոնի և գիտության միջև հակասությունը երկրի կյանքի, մարդու ծագման հարցերում։ Կարո՞ղ է արդյոք բարձր բարոյական լինել այն մարդը, որը աստծուն չի հավատում,— հավատացյալները այսպիսի և նման շատ հարցեր են տալիս պրոպագանդիստներին ու ագիտատորներին։*

*Այս տեղեկատուի խնդիրն է օգնել սկսնակ հակակրոնական պրոպագանդիստներին, նյութերով զինելու նրանց՝ հավատացյալների մեջ կատարվող աշխատանքի համար։ Հարցերի ընտրությունը, հարցեր, որոնց պատասխանները կազմում են այս գրքի բովանդակությունը, կատարվել է այն բազմաթիվ գրավոր հարցերի ուսումնասիրման հիման վրա, որոնք տրվել են երկրի զանազան մարզերում հակակրոնական զրույցներ և երեկոներ անցկացնող դասախոսներին։ Պատասխանները գրված են պարզ ու հանրամատչելի, ուստի դրանք կարելի է հանձնարարել ընթերցելու հենց իրենց՝ հավատացյալներին։*

*Գրեթե յուրաքանչյուր հարցի կապակցությամբ տրվում է գրականություն, գլխավորապես հանրամատչելի գրքեր և բրոշյուրներ, որոնք լույս են տեսել վերջին տարիներին։*

Ինդեքս՝ 77704

ОТДЕЛ ИДЕОЛОГИЧЕСКОЙ РАБОТЫ
ЦК КП АРМЕНИИ

# Агитатори блокнот

## № 10

## 1964

Խմբագիր՝ Վ. Խ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

ՎՖ 08219 Պատվեր 414 Տիրաժ 9353

Հանձնված է արտադրության 11/V 1964 թ.:
Ստորագրված է տպագրության 16/V 1964 թ.:

ՀՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության II տպարան,

Երևան, Կնունյանցի № 8:

Գինը 8 կոպ.: